Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 7 1949

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։


# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 1949 ԹՎԻ ԲՅՈՒՋԵՆ

1949 թվի ապրիլի 7—8-ը Երևան քաղաքում տեղի ունեցավ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի 4-րդ սեսիան, որը քննության առավ ու հաստատեց 1948 թվի Պետական բյուջեի կատարման վերաբերյալ հաշվետվությունը, քննության առավ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի 1949 թվի Պետական բյուջեն և այդ մասին օրենք ընդունեց, ինչպես նաև քննեց ու հաստատեց Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագրերը։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի 4-րդ սեսիան գումարվեց մեր ժողովրդի քաղաքական և արտադրական վիթխարի վերելքի պայմաններում։ Սովետական Միության ժողովուրդների մեծ ընտանիքում Սովետական Հայաստանի բանվորները, կոլխոզնիկները և ինտելիգենցիան հաջողությամբ կենսագործում են մեծ Ստալինի կողմից հանճարեղորեն նախագծված կոմունիստական հասարակության կառուցման վիթխարի ծրագիրը։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության համա-
խառն արտադրանքի թողարկման պլանը
1948 թվին կատարվեց 110,6 տոկոսով: 1948
թվի արդյունաբերության համախառն արտա-
դրանքը, 1940 թվի մակարդակի համեմա-
տությամբ, կազմեց 166,3 տոկոս:

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսու-
թյան կապիտալ շինարարության 1948 թվի
պլանը կատարվեց 103,5 տոկոսով, որը 1947
թվի համեմատությամբ կազմում է 110,5
տոկոս:

Անշեղորեն կենսագործելով ՀամԿ(բ)Պ
Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշու-
մը և պարտիայի ու կառավարության մի
շարք միջոցառումները, կոլխոզային գյուղի
աշխատավորները աճեցրին բարձր բերք:
1948 թվին ռեսպուբլիկայի գյուղատնտեսու-
թյան համախառն արտադրանքը նախապա-
տերազմյանից գերազանցեց ավելի քան 30
տոկոսով, ցանքատարածությունները ընդար-
ձակվեցին 8,6 տոկոսով:

Այս բոլորից բացի 1948 թվականը հան-
դիսացավ դրամական ռեֆորմի արդյունքնե-
րի ամրացման տարի: Սովետական ռուբլու
գնողունակության ուժեղացումը, գների իջե-
ցումը պայմաններ ստեղծեցին 1947 թվի հա-
մեմատությամբ բարձրացնելու բանվորների



և ծառայողների ռեալ աշխատավարձը ա-
վելի քան երկու անգամ:

Հետպատերազմյան ստալինյան հնգամյա-
կի պլանների կատարման շնորհիվ ձեռք բեր-
ված տնտեսական նվաճումների հիման վրա
հաջողությամբ կատարվեց նաև մեր ռես-
պուբլիկայի Պետական բյուջեն: Պետական
բյուջեի եկամուտները 1948 թվին կազմեցին
մեկ միլիարդ 63 միլիոն 277 հազար ռուբլի,
իսկ ծախսերը՝ մեկ միլիարդ 53 միլիոն 854
հազար ռուբլի: Այսպիսով բյուջետային տա-
րին փակվեց եկամուտների 9 միլիոն 400
հազար ռուբլու գերազանցումով՝ ծախսերի
նկատմամբ: Որպես կարևոր ցուցանիշ պետք
է նշել, որ սոցիալիստական ձեռնարկություն-
ների կուտակումներից ստացված մուտքերը
կազմեցին 810 միլիոն 300 հազար ռուբլի,
կամ բյուջեի բոլոր եկամուտների 76,2 տո-
կոսը:

Հայկական Սովետական Սոցիալիստա-
կան Ռեսպուբլիկայի 1949 թվի Պետական
Բյուջեի մասին օրենքով Սեսիան Հայկական
ՍՍՌ 1949 թվի Պետական բյուջեի ծավալը
նախատեսավ եկամուտների գծով՝ մեկ մի-
լիարդ 110 միլիոն 559 հազար ռուբլի և ծախ-
սերի գծով՝ մեկ միլիարդ 105 միլիոն 182
հազար ռուբլի: Անցած տարվա համեմատու-

թյամբ 47 միլիոն 282 հազար ռուբլով աճե-
լու են բյուջեի եկամուտները և 52 միլիոն
328 հազար ռուբլով աճելու են ծախսերը։
Այս նշանակում է, որ անցած տարվա համե-
մատությամբ ավելի արագ թափով է աճելու
մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտե-
սությունը, ավելի բուռն զարգացում են ապ-
րելու մեր կուլտուրան, գիտությունը, զգա-
լիորեն բարելավվելու է աշխատավորության
կենսամակարդակը։

Ամբողջ արդյունաբերության համախառն
արտադրանքի գծով 1949 թվին, 1948 թվի
համեմատությամբ նախատեսված է 20,8 տո-
կոսով աճ, իսկ էլեկտրաէներգիայի արտա-
դրանքի գծով՝ 45 տոկոսով, մետաղահատ
դազգահների արտադրանքի գծով՝ 12 տոկո-
սով, ավտոդողերի գծով՝ 17 տոկոսով, բրդյա
գործվածքների գծով՝ 40 տոկոսով, շաքարի
արտադրման գծով՝ 7 անգամ, գինու և կոն-
յակի գծով 2 անգամ աճ և այլն։

Բյուջեից ժողովրդական տնտեսության
ֆինանսավորմանը հատկացվում է 309 մի-
լիոն 600 հազար ռուբլի, բացի դրանից, տըն-
տեսական օրգանները իրենց շահույթներից
այդ նույն նպատակին կհատկացնեն 46 մի-
լիոն 800 հազար ռուբլի։

Կենտրոնացված և ապակենտրոնացված



կապիտալ ներդրումների ծավալը կկազմի
195 միլիոն 300 հազար ռուբլի։ Բացի այդ,
միութենական նշանակություն ունեցող ձեռ-
նարկությունների գծով կատարվելու են 246
միլիոն ռուբլու լիմիտային ներդրումներ։
Ֆինարարական պլանի համաձայն միջոցնե-
րի հիմնական մասը հատկացվում է մի շարք
արդյունաբերական օբեկտների կառուցմա-
նը, որոնք հնարավորություն կտան ավելաց-
նելու թեթև, սննդի, մսի. կաթի և տեղական
արդյունաբերության ձեռնարկությունների
արտադրական կարողությունը և ապահովել
նոր, ավելի բազմազան ասորտիմենտի թո-
ղարկումը։ Զգալի միջոցներ են հատկաց-
վում քաղաքների և շրջանային կենտրոնների
բարեկարգման համար։ Այդ հատկացումները
կազմում են 82 միլիոն ռուբլի։

Գյուղատնտեսության բնագավառում նա-
խատեսվում է ապահովել գյուղատնտեսա-
կան կուլտուրաների բերքատվության հետա-
գա բարձրացումը և կոլխոզային անասնա-
պահության մթերատվության ավելացումը։
Պետական բյուջեի ծախսերից ժողովրդա-
կան տնտեսության ֆինանսավորմանը հատ-
կացվող գումարներից 67 միլիոն 855 հազար
ռուբլին ներդրվելու է գյուղատնտեսության
մեջ։ Այդ նշանակում է, որ լայն հեռանկար-

ներ է բացվում մեր ռեսպուբլիկայում մերձարևադարձային կուլտուրաների զարգացման համար, չորայնության և երաշտի դեմ պայքարելու համար, այդ նպատակով ստեղծվելու են 112 կիլոմետր երկարությամբ, 1500 հեկտար տարածությամբ պետական դաշտապաշտպան անտառագոտիներ, որին հատկացվում է 11 միլիոն ռուբլի։ Ավելի քան 31 միլիոն ռուբլի հատկացվում է ջրային տնտեսության միջոցառումներին և ոռոգման գծով կատարվող շինարարությանը։ 1949 թվին ջրովի նոր տարածությունների աճը կազմելու է ավելի քան 5000 հեկտար։

Բոլոր այդ միջոցառումների ֆինանսավորումն ու նրանց կենսագործումը է՛լ ավելի կամրացնեն կոլխոզները կազմակերպչորեն և տնտեսապես, կբազմապատկեն նրանց հանրային հարստությունը և է՛լ ավելի կաճի մեր կոլխոզային գյուղացիության բարեկեցությունը։

1949 թվի Պետական բյուջեի ծախսերի 63,3 տոկոսը, կամ 698 միլիոն 900 հազար ռուբլի հատկացվում է սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորմանը։ Ըստ առանձին ճյուղերի նախատեսվում է հատկացնել լուսավորությանը 495 միլիոն 974 հազար ռուբլի, աճը 1948 թվի համե-



մատությամբ՝ 21 միլիոն 872 հազար ռուբլի, առողջապահությանը՝ 149 միլիոն 939 հազար ռուբլի, աճը՝ 14 միլիոն 157 հազար ռուբլի։ Սոցիալական ապահովությանը և պետական սոց. ապահովագրությանը՝ 47 միլիոն 205 հազար ռուբլի, աճը կազմում է 944 հազար ռուբլի։ Ֆիզկուլտուրային՝ 5 միլիոն 821 հազար ռուբլի, աճը կազմում է 492 հազար ռուբլի։

1949 թվի բյուջեով խոշոր միջոցներ են բաց թողնվում Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիային, որի ծախսերը կազմում են 41 միլիոն 700 հազար ռուբլի։

Արվեստի ճյուղերի համար հատկացվում է մոտ 18 միլիոն ռուբլի։

Զգալի գումարներ են նախատեսված բազմազավակ մայրերին տրվող նպաստների գծով։ Միայն 1948 թվին Հայկական ՍՍՌ-ում բազմազավակ և միայնակ մայրերին տրվել է 34 միլիոն 900 հազար ռուբլի պետական նպաստ։

Շրջանային և քաղաքային տնտեսության և կուլտուրայի բարձրացմանը հատկացվում է 522 միլիոն ռուբլի կամ 1949 թվի պետական բյուջեի 47,3 տոկոսը։

Այս թվերի մեջ լավագույն արտացոլումն է գտնում սովետական պետության,

Լենինի-Ստալինի պարտիայի ազգային քաղաքականության հետևողական կիրառումը, որի շնորհիվ արագորեն աճում է Սովետական Միության բոլոր ժողովուրդների ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, արվեստը, գրականությունը, գիտությունը։ Դրանք ցույց են տալիս ստալինյան վառ հոգատարությունը սովետական մարդու նկատմամբ, նրա բարօրության նկատմամբ։

Սովետական Հայաստանի 1949 թվի պետական բյուջեի կատարումը կօգնի մեզ, մեր Հայրենիքին հետպատերազմյան հնգամյակի չորրորդ տարում նոր, խոշոր քայլ կատարելու դեպի առաջ՝ տնտեսության և կուլտուրայի հզոր զարգացման և ժողովրդի նյութական բարեկեցության հետագա վերելքի համար։ Դա կլինի մի նոր քայլ դեպի առաջ, դեպի կոմունիզմ տանող այն փառապանծ ճանապարհին, որով ընթանում է մեր երկիրը մեծ Ստալինի ղեկավարությամբ։

Մեր ագիտատորների խնդիրն է լայն կերպով մասսայականացնել Սովետական Հայաստանի 1949 թվի Պետական բյուջեն և բանվորներին, կոլխոզնիկներին, մեր ողջ աշխատավորությանը մոբիլիզացնել այդ հոյակապ պլանի կենսագործման համար։

---



# ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԳԵՐԱԶԱՆՑ ՈՐԱԿԻ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՀԱՄԱՐ

Ընդամենը երկու ամիս է անցել այն օրվանից, ինչ Երևանի Կոշիկի № 1 ֆաբրիկայի աշխատողների կոլեկտիվը, քննության առնելով Մոսկվայի Կրասնոխոլմի Նուրբ մահուդի կոմբինատի վարպետի օգնական, ստախանովական Ալեքսանդր Չուտկիխի առաջարկությունը, որոշեց կազմակերպել սոցիալիստական մրցություն միայն գերազանց որակի կոշիկներ արտադրելու համար։ Եվ ահա այսօր այդ մրցությունը արդեն իր փայլուն արդյունքներն է տալիս, ֆաբրիկայում իսպառ վերացել է խոտան արտադրանքը, զգալիորեն բարձրացել է առաջին տեսակի արտադրանքի տոկոսը։

Ֆաբրիկայի ձեռք բերած այս հաջողությունները մեծ չափով հետևանք են պարտիական կազմակերպության ագիտկոլեկտիվի լավագույն աշխատանքի, ֆաբրիկայում ագիտացիոն-մասսայական աշխատանքի լավ դրվածքի։ Քննության առնելով Ալեքսանդր Չուտկիխի առաջարկությունը,

պարտիական կազմակերպության բյուրոն
գտավ, որ ֆաբրիկայում բոլոր պայմանները
կան բարձրորակ արտադրանք տալու, գերա-
զանց արտադրանքի բրիգադաներ կազմա-
կերպելու համար, միայն անհրաժեշտ է յու-
րաքանչյուր աշխատողի սեփականությունը
դարձնել Զուտկիխի հայրենասիրական նա-
խաձեռնության ունեցած խոշոր նշանակու-
թյունը, յուրաքանչյուր բանվորի և բանվո-
րուհու պարզ կերպով ցույց տալ իր դերն ու
անելիքները այդ գործում։ Պարտբյուրոն
այդ պատասխանատու գործը դրեց ագիտ-
կոլեկտիվի վրա։

Ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Վ. Ա-
դամյանը ագիտկոլեկտիվի ժողովում ման-
րամասն բացատրեց Զուտկիխի նախաձեռ-
նության էությունը, կոնկրետ օրինակներով
ցույց տվեց, թե ինչ կարող է տալ այն ի-
րենց ֆաբրիկային, հայտնեց, թե պարտ-
կազմակերպության բյուրոն ինչպես է որո-
շել կազմակերպել գերազանց որակի բրիգա-
դաներ, որոնք են ագիտատորների անելիք-
ներն այդ գործում և այլն։

— Տնտեսական խոշոր նշանակություն ու-
նեցող այս նախաձեռնության անցկացումը,
որը մեզ վրա է դրել պարտիական կազմա-
կերպությունը,— ասաց ագիտկոլեկտիվի



ղեկավարը,— չպետք է կրի կամպանիոն
բնույթ։ Այսօրվանից սկսած այն պետք է
դառնա մեր ամենօրյա աշխատանքի ա-
ռանցքը, մինչև որ ֆաբրիկան հաստատուն
կերպով սկսի արտադրել միայն գերազանց
որակի կոշիկ։ Բանվորների հետ ունեցած
մեկ կամ երկու զրույցով մենք չենք կարող
հասնել մեր նպատակին։ Որպես փորձ-
նական պարապմունք, առաջին զրույցը ես
կանցկացնեմ ցեխերից մեկում՝ ձեր բոլորի
մասնակցությամբ։

Ագիտկոլեկտիվի ղեկավար Վ. Ադամյանն
այդպես էլ արեց. կանանց կոշիկի ցեխում,
բոլոր ագիտատորների մասնակցությամբ
նա զրույց անցկացրեց իր մշակած և ա-
գիտատորներին արդեն ծանոթ պլանով։ Ա-
լեքսանդր Զուտկիխի նախաձեռնության ի-
մաստը և ունեցած նշանակությունը բա-
ցատրելուց հետո, նա ասաց.

— Սովետական պետության ականավոր
գործիչ Միխայիլ Իվանովիչ Կալինինն ասել
է. մեզնից յուրաքանչյուրը հայհոյում է,
երբ մի որևէ վատ իր է տեսնում։ Բայց
մենք ինքներս չենք մտածում, թե ի՞նչ ո-
րակի արտադրանք ենք տալիս մենք։

Մեր արտադրանքը գնում է յուրաքանչյուր
սովետական քաղաքացի, ուրեմն իրավունք

ո՞ւնենք մենք նրանց ցածրորակ արտադրանք տալու, իհարկե ոչ։ Իսկ մենք ի՞նչ ենք անում։ Այ, անցյալ, հունվար ամսին, մեր ֆաբրիկան հինգ տոկոսով պակաս առաջին տեսակի արտադրանք տվեց, քան նախատեսված էր պլանով, պետությունը դրանից 9.600 ռուբլու վնաս ստացավ։ Այդ հինգ տոկոսի մեջ ձեր ցեխի բաժինը կազմում էր մոտ կեսը։ Բայց չէ՞ որ այդ վնասը չէր լինի, եթե ձեզնից յուրաքանչյուրը ձգտեր տալու միայն բարձրորակ արտադրանք, աշխատեր այնպես, ինչպես աշխատում են ընկերներ Գևորգ Աշուղյանը, Հակոբ Բաբայանը, Բյուզանդ Բաղդասարյանը, Բաբկեն Հովհաննիսյանը, որոնք տալիս են միայն գերազանց որակի արտադրանք։

Ապա ագիտկոլեկտիվի ղեկավարը խոսում է գերազանց որակի արտադրանքի բրիգադաներ կազմակերպելու հնարավորությունների ու նշանակության մասին և ունկնդիրներին դիմում հետևյալ հարցով.

— Ի՞նչ եք կարծում, մեզ մոտ հնարավո՞ր է կազմակերպել այդպիսի բրիգադաներ։

Խոսք է վերցնում ստախանովական բանվոր Գ. Աշուղյանը։

— Ես կարծում եմ,— ասում է նա,— որ



ոչ միայն կարելի է, այլև անհրաժեշտ է գերազանց որակի արտադրանքի բրիգադաների կազմակերպումը մեզ մոտ։ Մեր ֆաբրիկայի արտադրանքի որակը կախված է մեր յուրաքանչյուրիս աշխատանքից, իսկ մենք աշխատում ենք անջատ-անջատ, մեկս մյուսի աշխատանքով չենք հետաքրքրվում, պատասխանատու չենք ընկերների առաջ։ Յուրաքանչյուրիս աշխատանքի որակն ըստուգում է միայն տեխնիկական վերահսկիչը, արտադրանքի որակի նկատմամբ կոլեկտիվի վերահսկողություն չկա։ Մենք պետք է դիմենք ֆաբրիկայի դիրեկցիային և պարտկազմակերպությանը՝ մեզ մոտ նույնպես կազմակերպելու գերազանց որակի արտադրանքի բրիգադաներ։

Ստախանովական Գ. Աշուղյանն ասաց այն, ինչ որ սպասում էր ագիտկոլեկտիվի ղեկավարը, և նա շարունակում է զրույցը, խոսում է պարտկազմակերպության որոշման մասին։

— Միանգամայն ճիշտ է ընկեր Աշուղյանը, ֆաբրիկայի պարտկազմակերպությունը և դիրեկցիան էլ նույն կարծիքն ունեն—մեզ մոտ պետք է կազմակերպել գերազանց որակի արտադրանքի բրիգադաներ, յուրաքանչյուր բրիգադայի մեջ ընդգրկելով աշ-

խատանքի նույն պրոցեսը կատարող բան-
վորներին, նրանցից ավելի հմուտին և ա-
ռաջավորին առաջադրելով որպես բրիգա-
դիր։ Ես կարծում եմ, որ վատ չի լինի, եթե
ամեն մի բրիգադայում առանձնացվի նաև
որակի հսասրակական հսկիչ, որը հնարա-
վորություն կունենա տեղն ու տեղը ստուգել
բրիգադայի յուրաքանչյուր անդամի աշխա-
տանքի որակը։

Այսպիսով ագիտկոլեկտիվի ղեկավարը
բանվորներին ասաց այն, ինչ որ որոշել էր
պարտիական կազմակերպությունը։ Նրա
ունկնդիրները մեծ աշխուժությամբ սկսեցին
խոսել այդ հարցի մասին և բոլորն էլ միա-
համուռ կերպով հավանություն տվեցին գե-
րազանց որակի արտադրանքի բրիգադաներ
կազմակերպելու առաջարկությանը։

Ագիտկոլեկտիվի ղեկավար Վ. Ադամյանի
անցկացրած այս զրույցը ագիտատորներին
շատ բան սովորեցրեց։ Նրանցից յուրա-
քանչյուրը նախապատրաստվեց և այդ թե-
մայի շուրջը զրույց անցկացրեց իր ունկըն-
դիրների հետ։ Այս զրույցների շնորհիվ
ֆաբրիկայի բոլոր բանվորները պարզ կեր-
պով տեսան, թե ցածրորակ արտադրանքն
ինչպիսի խոշոր վնասներ է տալիս պետու-
թյանը, ֆաբրիկային, իրենցից յուրաքան-



չյուրին. նրանք համոզվեցին գերազանց ո-
րակի արտադրանքի բրիգադաների խոշոր
շահավետության մեջ և ամենուրեք միա-
համուռ կերպով հավանություն տվեցին
այդպիսի բրիգադաների կազմակերպմանը։

Նախապատրաստական ցեխի ագիտատոր
Թ. Հարությունյանը, որը միաժամանակ և
ցեխի վարիչն է, իր ունկնդիրների հետ
զրուցելիս, նրանց ցույց տվեց մի վատ
կարված կոշիկի երես և ասաց.

— Եթե մագազինում ձեզանից մեկն ու
մեկին առաջարկեին այսպիսի կոշիկ, ապա
դուք կգնե՞իք։

Ապա կոշիկի երեսը տալով բանվորուհի
Ռ. Չիթչյանին, նա հարցրեց.

— Ռոզա, ապա նայիր, դու կգնե՞իր այս
կոշիկը։

Ռոզան նայեց կոշիկի երեսի ծուռ ու
մուռ կարերին և նկատելի կերպով շիկնեց։
Այդ նրա կարածն էր։ Ագիտատորը, որը
շատ լավ գիտեր երիտասարդ բանվորուհու
բնավորությունը, չհայտարարեց, որ այդ
նրա կարածն է. նա միայն ասաց.

— Ես համոզված եմ, որ նրա կարողը,
եթե լավ գիտակցեր, որ ինքը այդ կոշիկը
կարում է իր նման աշխատավորների համար
և եթե նա իրեն պատասխանատու զգար իր

ընկերների, մեր ամբողջ կոլեկտիվի առաջ, նա այդպես վատորակ արտադրանք չէր տա։

Ունկնդիրները մեծ հետաքրքրությամբ ձեռքից-ձեռք անցկացրին վատորակ կոշիկը։

Այս զրույցից անցավ որոշ ժամանակ, ցեխի վարիչը մի քանի անգամ խոսեց Չիթչյանի հետ։

Երբ նախապատրաստական ցեխում կազմակերպում էին գերազանց որակի արտադրանքի բրիգադաներ, ցեխի վարիչ, ագիտատոր Բ. Հարությունյանը, որպես բրիգադիր առաջադրեց Ռոզա Չիթչյանին։ Երիտասարդ բանվորուհին ամբողջովին փոխվեց աշխատանքի մեջ։ Նա այժմ տալիս է միայն բարձրորակ արտադրանք և լավագույն աշխատանքով իր ղեկավարած բրիգադայում իսպառ վերացրել է ցածրորակ արտադրանքը։

Ապրիլի 9-ին տեղի ունեցավ ֆաբրիկայի ստախանովական բանվորների և բանվորուհիների հավաք։ Ամփոփելով գերազանց որակի արտադրանքի համար մղվող պայքարի անցած երկու ամսվա արդյունքները, ագիտկոլեկտիվի ղեկավար, պարտկազմակերպության քարտուղար ընկ. Վ. Ադամյանն ասաց.

— Ալեքսանդր Զուռկիխի առաջարկու-



թյամբ մեր ֆաբրիկայում կազմակերպված գերազանց որակի արտադրանքի 43 բրիգադաների աշխատանքի նախնական արդյունքներն զգալի են։ Եթե պլանով նախատեսված 78,2 տոկոս առաջին տեսակի արտադրանքի փոխարեն ֆաբրիկան հունվարին տվեց 68,2 տոկոս, ապա փետրվարին առաջին տեսակի արտադրանքը կազմեց 77,8, իսկ մարտին՝ 74,1 տոկոս։ Փետրվար և մարտ ամիսներին իսպառ վերացվեց խոտան արտադրանքը։ Բայց այս միայն նախնական արդյունքներն են և այն մեզ բավարարել չի կարող։ Մենք պետք է պայքարենք միայն բարձրորակ արտադրանք տալու համար։ Յուրաքանչյուր բրիգադա պետք է աշխատի այնպես, ինչպես աշխատում են Գևորգ Նալչաջյանի, Եզնիկ Ժամկոչյանի, Թորոս Ալթունյանի, Մարուսյա Կարապետյանի, Գևորգ Աշուղյանի, Հայկ Կիրակոսյանի բրիգադաները, որոնք տալիս են միայն գերազանց որակի արտադրանք։

Ստախանովականների հավաքը որոշեց լայնորեն ծավալելով նախամայիսյան սոցիալիստական մրցությունը առաջին տեսակի արտադրանքը հասցնել 85 տոկոսի։

Լ. ՂԱՐԻԲՅԱՆ

# ԼԱՅՆՈՐԵՆ ԶԱՐԳԱՑՆԵՆՔ ՄԵՐՁԱՐԵՎԱ-ԴԱՐՁԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԸ

Հայկական ՍՍՌ-ի առանձին գոտիների հողային ու կլիմայական պայմանները լայն հնարավորություններ են տալիս այնտեղ մը-շակելու և զարգացնելու մերձարևադարձա-յին թանկարժեք կուլտուրաներ՝ ձիթենի, նուշ, թուզ, նուռ, ֆիստաշկա, սերկևիլ, կա-ղին, ընկույզ, արևելյան խուրմա և այլն։ Մեր ռեսպուբլիկայում այդ կուլտուրաներն արմատավորելու և զարգացնելու գործին հատուկ ուշադրություն նվիրեց ՀԿ(բ)Պ 14-րդ համագումարը։

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը 1949 թվի փետրվարի 6-ին որոշում ընդու-նեց «Հայկական ՍՍՌ կոլխոզներում և սով-խոզներում մերձարևադարձային կուլտուրա-ների պտղաբուծությունը զարգացնելու միջո-ցառումների մասին»։ Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի 2-րդ պլենումը քննարկեց այդ հարցը և մանրամասն միջոցառումներ մշա-



կեց՝ ռեսպուբլիկայում մերձարևադարձային կուլտուրաների զարգացման համար։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ սահմանվել է մեր ռեսպուբլիկայում 1950-1955 թ. թ. մերձարևադարձային կուլտուրա-ներ տնկել 10 հազար հեկտար տարածության վրա, որից կոլխոզներում՝ 7500 հեկտար և սովխոզներում՝ 2500 հեկտար։ Ըստ առան-ձին կուլտուրաների սահմանվել է հետևյալ պլանը. ձիթենի՝ 2000 հեկտար, թզենի՝ 2000 հեկտար, նռենի՝ 800 հեկտար, նշենի՝ 1500 հեկտար, սերկևիլ՝ 500, ֆիստաշկա՝ 400, կաղին՝ (պնդուկ) 1300, ընկուզենի՝ 1500 հեկտար։

Միութենական կառավարության այս որո-շումը մեծ հեռանկարներ է բացում մեր ռես-պուբլիկայի մերձարևադարձային զոնայի մի շարք շրջանների առջև կոլխոզներում և սով-խոզներում նոր թանկարժեք կուլտուրաներ արմատավորելու և զարգացնելու համար և լայն հնարավորություններ է ստեղծում ոչ միայն բարելավելու աշխատավորության սպառողական պահանջները, այլև բարձրաց-նելու կոլխոզների ու կոլխոզնիկների եկա-մուտները, իսկ կոնսերվի արդյունաբերու-թյան համար ստեղծվում է նորանոր բարձր արժեք տեսակների հումքի բազա։

Հայաստանում մերձարևադարձային կուլտուրաները ոչ մեծ տարածություններով մըշակվում են հիմնականում Մեղրու, Ալավերդու, Նոյեմբերյանի, Իջևանի, Շամշադինի, Ղափանի, Գորիսի և մի քանի այլ շրջաններում։ Մինչդեռ Հայաստանի շատ շրջաններ ունեն չոր, ցամաքային, մերձարևադարձային դաժան հատուկ կլիմայական պայմաններ (Կոտայք, Աշտարակ, Էջմիածին, Բերիա, Թալին, Ախտա, Վեդի, Կիրովական) և այդ շրջաններում կարելի է արմատավորել մերձարևադարձային որոշ կուլտուրաներ՝ ֆիստաշկան, ընկույզը, սերկևիլը և այլն։

Այդ կուլտուրաներից ձիթապտուղը, նուռը, թուզը և կաղինը պատկանում են այն բույսերի թվին, որոնք աճում են մերձարևադարձային և բարեխառն գոտու հարավային մասերում, որտեղ խիստ ցրտեր չեն լինում և ձմռանը ջերմաստիճանը 16 աստիճանից ցածր չի իջնում։ Այդ կուլտուրաներն ունեն այն առավելությունները, որ երաշտադիմացկուն են և լավ զարգանում են ավազոտ, թափանցիկ, քարքարոտ հողերում և սարալանջերում։ Ելնելով այդ կուլտուրաների դեպի հողակլիմայական պայմաններն ունեցած պահանջներից, նրանց զարգացման և տա-



րածման շրջանները մեր ռեսպուբլիկայում պետք է լինեն.

**Նոյեմբերյանի** շրջանի որոշ միկրոռայոններ, ինչպիսիք են Դեբետ գետի հովտում ընկած ոռոգելի հողերը, նույն գետի ուղղությամբ Այրում կայարանի և Շնող կիսակայարանի միջև ընկած կիրճերը։

**Ալավերդու** շրջանը, որտեղ մերձարևադարձային գոտին տարածվում է Դեբետ գետի կիրճով՝ շրջանի հյուսիսային սահմանից մինչև Քոբեր կիսակայարանը։ Այս. շրջանի ամենաբարձր ջերմաստիճան ունեցող գոտին ընդգրկում է Հաղպատ, Ախթալա և Այրում կիսակայարանները։ Այդ վայրերում մշակվում են թզենու, նռենու կուլտուրական տեսակները։

**Շամշադինի** շրջանը, որի մերձարևադարձային գոտին գտնվում է ծովի մակերևույթից 900-950 մետր բարձրության վրա։ Նա ընդգրկում է երեք հողամաս՝ Հասանլու, Թովուզ և Ղուլալի գետերի հովիտները, որտեղ առավել տարածված են թուզը, նուռը, նուշը, ընկույզը և այլն։ Այստեղ բոլոր նախադըրյալները կան նաև անջրդի պայմաններում մշակելու թզենի, նռենի և ֆիստաշկա։ Կարելի է հաջողությամբ զարգացնել նաև ձիթապտուղը։

Իջևանի շրջանում, ուր մերձարևադարձային կուլտուրաների զարգացման լավագույն պայմաններ կան Ուզունթալայի, Լալի և այլ գյուղերի դաշտամասերում։ Ուզունթալայում գտնվում է Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության պտղատնկարանը, որտեղ հիմնված են մերձարևադարձային կուլտուրաների կոլեկցիոն և սորտաստուգիչ հողամասերը։ Տնկարանի երկար տարիների կատարած աշխատանքի փորձը հաստատեց, որ հնարավոր է այդ գոտում մշակել թուզ, նուռ, արևելյան խուրմա և այլն։

Մեղրու շրջանը, որն աչքի է ընկնում թե իր բարձր ջերմաստիճանով և թե տարվա ամենացուրտ ամսին՝ հունվարին նպաստավոր միջին ջերմաստիճանով։

Մերձարևադարձային պտղաբուծության զարգացման համար նպաստավոր պայմաններ ունեցող շրջանների թվին են պատկանում նաև Գորիսը, Ղափանը և մասամբ Սիսիանը։

Գորիսի մերձարևադարձային գոտին ընդգրկում է Քարահունջ, Կյորու, Մաղանջուղ, Շինուհայր և Խոտ գյուղերի այգիները, որոնք գտնվում են Որոտան գետի և նրա վտակների խորը կիրճերում։ Այդ տարածություններում կան նաև, թզի կուլտուրական տեսակներ,



որոնք գրեթե անտարբեր են տեղի ցրտերի նկատմամբ։

Բացի դրանից, Որոտանի կիրճում կարելի է մշակել արևելյան խուրմա, իսկ լեռնալանջերին, նույնիսկ անջրդի պայմաններում՝ նուշ, ֆիստաշկա։

Ղափանի շրջանի արևելյան մասը ունի նպաստավոր պայմաններ թզենու, նռենու, նշենու և արևելյան խուրմայի զարգացման համար։ Այդ կուլտուրաները ամենուրեք կարելի է մշակել Ագարակ, Եղվարդ գյուղերի հովիտներում և շրջակայքում, ինչպես նաև Ագարակից դեպի Ղափան ձգված տարածության վրա։ Բացի այդ, մերձարևադարձային գոտիներ ունեն նաև Շեկահող գյուղի մերձակա հողերը և Արծվանիկ գյուղից դեպի արևմուտք ընկած տաք հովիտները։

Մերձարևադարձային մյուս կուլտուրաները, ինչպիսիք են ֆիստաշկան, նուշը, սերկևիլը, ընկույզը և այլն, որոնք դիմանում են նույնիսկ 25 աստիճան ցրտերին, ամենուրեք և մեծ տարածությունների վրա կարելի է և պետք է զարգացնել Աշտարակի, Բերիայի, Կոտայքի, Վեդու, Էջմիածնի, Թալինի, Միկոյանի, Ազիզբեկովի և այլ շրջաններում։

Առավել ևս մեծ հեռանկարներ ունեն մերձարևադարձային կուլտուրաների զարգացման

համար Աշտարակի և Կոտայքի շրջանները,
որտեղ նոր ջրանցքների կառուցման հետե-
վանքով պետք է ոռոգվեն տասնյակ հազար
հեկտար նոր հողեր։ Այսպես, օրինակ, նոր
կառուցվող Թալինի ջրանցքի տակ ոռոգվելու
են 31 հազար հեկտար հողեր, դրանց զգալի
մասը՝ Եղվարդի և Աշտարակի միջև ընկած
ամբողջ տարածությունները, հնարավոր է
դնել մերձարևադարձային կուլտուրաների
տակ։ Այդ նույն հողային պայմաններում
կազմակերպվել է Սննդի արդյունաբերության
մինիստրության նուշի սովխոզը։

Մեծ հեռանկար ունի նաև Կոտայքի շըր-
ջանը, որտեղ Գյառնիի ջրանցքի տակ իրաց-
վելու են 700 հեկտար նոր հողեր, իսկ Նորքի
ջրանցքի տակ՝ 2000 հեկտար։

Ավելի բարձր գոտիներում, Կիրովականում
Ախտայում, Թալինում նպաստավոր պայ-
մաններ կան հիմնականում կաղնու և ըն-
կույզի աճման համար։

Հայկական ՍՍՌ-ում մերձարևադարձային
կուլտուրաների զարգացման մասին ՍՍՌՄ
կառավարության որոշումը 1950-1955 թվե-
րին իրականացնելու համար առաջին հեր-
թին անհրաժեշտ է կազմակերպել տնկարա-
նային տնտեսությունների կայուն բազա, որ-
տեղ պետք է աճեցվեն պահանջված քանա-



կությամբ տնկիներ։ Այդ նպատակով պե-
տական մերձարևադարձային կուլտուրաների
խոշոր տնկարաններ են կազմակերպվում
Գյուղատնտեսության մինիստրության գծով
Վեդու և Էջմիածնի շրջաններում՝ 300-ական
հեկտար տարածությամբ և Հայկոոպսերվտրես-
տի գծով՝ Նոյեմբերյանի շրջանում։ Բացի այդ,
ռեսպուբլիկայի 9 շրջաններում կազմա-
կերպվում են կոլխոզային տնկարաններ, որ-
տեղ ամեն տարի տնկվելու է 17 հեկտար,
կամ յուրաքանչյուր շրջանում առնվազն 2
հեկտար տարածություն։ Ընթացիկ տարում
պետք է հիմնվեն մերձարևադարձային կուլ-
տուրաների տնկարաններ 51 հեկտար տա-
րածության վրա։

Տնկարանների հիմնման պլանները ժամա-
նակին և որակով կատարելու համար ան-
հրաժեշտ է որպեսզի կոլխոզները. և «Պտղա-
տնկարան» գրասենյակը այժմվանից ձեռնա-
մուխ լինեն թզենու, նռենու, սերկևիլի և այլ
մերձարևադաձային կուլտուրաների կտրոն-
ների մթերման գործին, այն հաշվով, որ ա-
պահովվի 380 հազար թզենու, 250 հազար
նռենու, 600 հազար սերկևիլի և այլ կուլ-
տուրաների կտրոնների մթերումը։ Կտրոննե-
րը մթերելու ժամանակ շրջանի ագրոպերսո-
նալը, կոլխոզների վարչությունների նախա-

գահները, բրիգադիրներն ու օղակավարները
պետք է հետևեն, որպեսզի կտրոնները վերց-
վեն լավագույն սորտերից, որոնք տվյալ շըր-
ջանի կլիմայական պայմաններում տալիս են
բարձր բերք։
Անհրաժեշտ է այժմվանից առանձնացնել
տնկարանների համար հատկացված հողա-
մասերը։ Տնկարաններին պետք է տրամա-
դրել ամենալավագույն և անպայման ջրով
ապահովված հողամասեր։ Դաշտային աշխա-
տանքների համար նպաստավոր պայմաններ
ստեղծվելուն պես անհրաժեշտ է տնկարան-
ների հողը նախապատրաստել (պլանտաժ,
հարթեցում, պարարտացում գոմաղբով և այ-
լըն), այն հաշվով, որպեսզի գարնանը ագրո-
տեխնիկական սեղմ ժամկետներում ավարտ-
վի տնկարանների հիմնումը։ Տնկարաններին
պետք է ամրացնել փորձված, լավագույն
պտղաբույծ կոլխոզնիկներ։

Գյուղատնտես Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

---

# ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ

1945 թվի սկզբներին Սովետական Բանակի կողմից Հունգարիան ազատագրվեց ֆաշիստ վամպիրների ժողովրդատյաց ծանր լծից։ Այդ հաղթանակի շնորհիվ հունգար ազատասեր ժողովուրդը իր բախտի տնօրինումը, այս անգամ վերջնականորեն, վերցրեց իր ձեռքը։ 1946 թվի հունվարին Ազգային Ժողովը, մեկընդմիշտ լիկվիդացնելով ատելի միապետական ռեժիմը, Հունգարիան հռչակեց Ժողովրդական Ռեսպուբլիկա։

***

Հունգարիան գտնվում է Արևելյան Եվրոպայում և ընդգրկում է Դանուբի կենտրոնական ավազանի ու նրա վտակ Տիսա գետի ընդարձակ հարթության շրջանները։ 1920 թվի սահմաններում նրա տարածությունը կազմում է 93.000 քառ. կմ.։

Հունգարիայի տարածության մեծ մասը՝ Դանուբի ավազանը և արևմտյան շըր-

ջաններր ներկայացնում են ծովի մակերեվույթից 100—200 մետր բարձրություն ունեցող հարթություն (հունգարական ցածրություն), իսկ Տիսա գետից արևելք ընկած շրջանները՝ 50—100 մետր։ Երկրի հարավում՝ Մեչեկի և Բալատոն լճի հյուսիսում՝ Բակոնյան հանքաշատ լեռները հազիվ ունեն 500—700 մետր բարձրություն։ Հունգարիայի հյուսիս-արևելքում ռելեֆը ավելի լեռնոտ է. այստեղ ձգվում են Կարպատների նախալեռներ հանդիսացող՝ Մատրա, Բյուկկ, Տոկայան ոչ բարձր լեռները։

Տեղումները բավարար չեն (400 մմ), միայն հարավային առանձին շրջաններում տեղումների քանակը հասնում է 700 մմ-ի։ Դանուբ գետը իր ջրառատ և լայն հունով և նրա վտակ Տիսան բազմակողմանի նշանակություն ունեն երկրի տնտեսության համար։ Հունգարիայի և Հարավսլավիայի սահմանով հոսում է Դրավա գետը։ Հունգարիան հարուստ է մարգագետիններով և համեմատաբար աղքատ է անտառներով։ Հունգարիան ածխի, նավթի, բնական գազի, տորֆի, երկաթի, մարգանեցի, բոքսիտի (Հունգարիայի ազգային հարստությունը — մոտ 250 միլիոն տոննա պաշարով), պղնձի կոլչեդանի, բազմամետաղների, արծաթի, ոսկու, ինչպես նաև



բազմատեսակ շինանյութերի ու հիդրոռեսուրսների արդյունաբերական զգալի պաշարներ ունի։

Հունգարիայի բնակչությունը 1941 թվի տվյալներով կազմում էր 9.319.900 մարդ։ Բնակչությունը բավականաչափ համաչափ է բաշխված երկրում. միջին խտությունը 1 քառ. կմ. վրա կազմում է 98 մարդ։ Բնակչությունը գերազանցապես հունգարներ են (մադյառ). 10.000 և ավելի բնակիչ ունեցող բնակավայրերում ապրում է ընդհանուր բնակչության 33 տոկոսը։ Կարևորագույն քաղաքների թվում պետք է նշել մայրաքաղաք Բուդապեշտը — Բուդա՝ հին քաղաքը Դանուբի բլրոտ աջ ափին և Պեշտը — քաղաքի նոր բարեկարգ մասը, գետի ձախ հարթ ափին։ Լայնանիստ ու քաղաքին գեղեցիկ տեսք տվող Դանուբ գետի երկու ափերը միացվում են 6 կամուրջներով։ Մայրաքաղաքի բնակչության քանակը, արվարձանների հետ միասին, կազմում է 1,6 միլիոն մարդ։ Բուդապեշտը հանդիսանում է երկրի խոշորագույն արդյունաբերական կենտրոնը, ինչպես նաև քաղաքական և կուլտուրական կյանքի բաբախող սիրտը։ Հարավի արդյունաբերական կարևոր կենտրոններից են Սեգեդը և Պեչը։ Արևելյան Հունգարիայի խոշոր արդյունաբե-

ռական կենտրոնն է Դեբրեցեն քաղաքը, իսկ
հյուսիս-արևելյան մասում են գտնվում Միշ-
կոլց, Օզդ, Դիոշդյոր և Նադաշտ քաղաքները։
Հունգարիայի ժողովրդական տնտեսության
մեջ գյուղատնտեսությունը գերակշռող դեր
ունի։ 1930 թվի վիճակագրության տվյալնե-
րով գյուղատնտեսության մեջ զբաղված էր
բնակչության մոտ 52 տոկոսը։

Հունգարիայի գյուղատնտեսության մեջ
մինչև 1945 թիվը տիրապետում էր խոշոր հո-
ղատիրությունը։ Խոշոր կալվածատիրական
տնտեսությունները, որոնք ունեին 200—5000
և ավելի հոլդ (1 հոլդ=0,57 հեկտարի) հող,
կազմում էին գյուղացիական տնտեսություն-
ների 0,4 տոկոսը, որոնց պատկանում էր
մշակվող հողերի 42,8 տոկոսը։ Դրան հա-
կառակ սակավահող չքավոր տնտեսություն-
ները, որոնք ամենափոքր հողաբաժիններից
մինչև 5 հոլդ հող ունեին, կազմում էին բո-
լոր տնտեսությունների 85 տոկոսը, որոնց
ձեռքերում գտնվում էր մշակվող հողերի 19,4
տոկոսը։ Գյուղատնտեսական բանկային-
վարկային հիմնարկները, գյուղատնտեսական
մեքենայական-արտադրական միջոցները
նույնպես կենտրոնացված էր կալվածատի-
րական-կուլակային խոշոր մագնատների և
ընկերությունների ձեռքում, հողագուրկ ու



սակավահող գյուղացիությունը սոսկալի շա-
հագործման էր ենթարկվում կալվածատերերի
ու կուլակների կողմից։ Հունգարիայի հողա-
յին տարածության 60 տոկոսից ավելին են-
թարկվում է մշակման։ Ցանքային տարածու-
թյան 80 տոկոսը զբաղեցված է հացահատիկ-
ներով։ Հունգարիան համարվում է Եվրոպայի
հացի շտեմարաններից մեկը։ Տեխնիկական
կուլտուրաներից մշակում են շաքարի ճա-
կընդեղ, ծխախոտ։ Զգալիորեն տարածված է
խաղողաբուծությունն ու պտղաբուծությունը.
միայն խաղողի այգիների տարածությունն
անցնում է 200 հազար հեկտարից։ Անասնա-
պահության գլխավոր ճյուղերն են հանդի-
սանում խոշոր եղջերավոր անասունների ու
խոզաբուծության ճյուղերը։

Հունգարիայի արդյունաբերությունը թույլ
է զարգացել։ Վերամշակող արդյունաբերու-
թյան մեջ գերակշռում էին գյուղատնտեսա-
կան հումքը մշակող արտադրական ճյուղերը։
Երկրում եղած բազմատեսակ հանքային հա-
րստությունները օգտագործվում էին սահ-
մանափակ չափերով. մի շարք հանքատե-
սակների շահագործումը կատարվում էր օ-
տար պետությունների արդյունաբերության
կարիքների համար։

Հունգարական կալվածատերերն ու կապի-

տալիստները, հաշվի չառնելով երկրի ու ժողովրդի շահերը, արյունառուշտ դիկտատոր Խորթիի կառավարության միջոցով Հունգարիան մղեցին երկրորդ համաշխարհային պատերազմի մեջ։ Նրանք երկիրը դարձրին ֆաշիստական Գերմանիայի ռազմա-տնտեսական կցորդը։ Այդ պատերազմում Գերմանիայի կողմից կողոպտված ու ավերված Հունգարիան գտնվում էր տնտեսական լիակատար փլուզման եզրին։ Հունգար ժողովրդին այդ ծանր վիճակից փրկեց ժողովուրդների ազատարար Սովետական Բանակը, որը ջախջախեց ու դուրս շպրտեց երկրից գերմանական օկուպացիոն և հունգարական ֆաշիստական բանակները։ Այդ հաղթանակի շնորհիվ Հունգարիայի աշխատավորությունը իր բախտի տնօրինումը վերցրեց իր ձեռքը։ Երկրում ստեղծվեցին նոր դեմոկրատական կարգեր։

Չնայած նոր կարգերը հաստատվելուց հետո անցել է շատ փոքր ժամանակաշրջան, բայց արդեն պատմական նշանակություն ունեցող փոփոխություններ են կատարվել երկրի քաղաքական-տնտեսական կյանքում և ձեռք են բերվել կարևոր նվաճումներ։ Հողային ռեֆորմի միջոցով լիկվիդացվել է կալվածատիրական-վանքապատկան խոշոր հո-



ղատիրությունը։ Բռնագրավված և ետ գնված հողերի հաշվին մոտ 5,5 միլ. հոլդ հող է բաժանվել հողազուրկ ու սակավահող գյուղացիներին։ Ավելի քան 650 հազար նախկին բատրակային և բոլորովին հողազուրկ տընտեսություններ առաջին անգամ հողի սեփականատեր են դարձել։ Անցյալ տարվա կեսերին երկրում կազմակերպված էր 200-ից ավելի կոլեկտիվ տնտեսություն վարող առաջին կոոպերատիվ տնտեսությունները։ Ներկայումս նրանց քանակը մեծապես աճել է։ Պետությունը մեծ օգնություն է ցույց տալիս աշխատավորական գյուղացիական տնտեսություններին, նրանց տրվում է սերմացու, ժամանակակից գյուղատնտեսական խոշոր մեքենաներ, պարարտանյութ և այլն։ 1948 թ. երկրում կազմակերպված էր 100 ՄՏԿ։ Կուլակային տնտեսությունների դեմ պայքարելու համար օրենքով սահմանված են կարևոր միջոցառումներ, նրանց եկամուտը ենթարկվում է պրոգրեսիվ հարկման։

Օրենքով արգելված է հողի վաճառքն ու վերավաճառքը։

Արդյունաբերության ասպարեզում նույնպես տեղի են ունեցել արմատական փոփոխություններ։ 1947 թ. վերջին պառլամենտը օրենք ընդունեց 5 ամենախոշոր բանկային

հիմնարկները և 254 արդյունաբերական խո-
շոր ձեռնարկությունները ազգայնացնելու
համար։ Հետագա նոր միջոցառումների հե-
տևանքով, 1948 թվի վերջին արդյունաբե-
րության համախառն արտադրանքի մեջ, ա-
ռանց տնայնագործության, պետականացված
արդյունաբերության բաժինը կազմում էր 85
տոկոսը։ Ներկայումս պետության ձեռքումն
են գտնվում ամբողջ բանկային-վարկային
սիստեմը, տրանսպորտային տնտեսության
հիմնական ճյուղերը, ամբողջ արտաքին և
ներքին խոշոր առևտուրը և այլն։

Ընդհանուր ժողովրդա-տնտեսական պլա-
նով սկսվել են երկրի տնտեսության վերա-
կանգնման ու զարգացման մեծ աշխա-
տանքները։ 1947 թվի օգոստոսի 1-ին գործո-
ղության մեջ մտավ եռամյա պլանը։ Այդ
պլանի համաձայն եռամյակի վերջում ար-
դյունաբերության ընդհանուր արտադրանքը,
1938 թվի համեմատությամբ, ավելանալու է
27 տոկոսով. կատարվելու են էլեկտրակա-
յանների կառուցման մեծ աշխատանքներ,
էլեկտրաէներգիայի արտադրությունը 1938
թվին արտադրած 1,4 միլիարդ կիլ. ժամից
հասցվելու է 2,1 միլիարդ կիլ. ժամի։ Եռամ-
յա պլանով զգալի չափով աճելու են ածխի,
նավթի, բոքսիտի, գունավոր մետաղների,



երկաթահանքի արդյունաբերությունն ու վե-
րամշակությունը։ Վերականգնվելու և տեխ-
նիկական նոր բազայի վրա վերակառուցվե-
լու են մեքենաշինության, սննդի, թեթև և
արդյունաբերության այլ ճյուղերը։ Մեքենա-
շինությունը զգալիորեն մասնագիտացվելու է
նաև գյուղատնտեսությանը ժամանակակից
կատարելագործված մեքենաներ տալու ուղ-
ղությամբ. արդեն գործում է տրակտորներ
արտադրող մեքենաշինական գործարանը, ո-
րը այս տարի թողարկելու է 2500, իսկ 1950
թվին՝ 3000 տրակտոր։ Գյուղատնտեսության
ընդհանուր համախառն արտադրանքը հասց-
վելու է նախապատերազմյան մակարդակին։
Գյուղատնտեսական հիմնական մեծ աշխա-
տանք պահանջող պրոցեսները մեքենայաց-
նելու համար ՄՏԿ-ի քանակը հասցվելու է
300-ի, իսկ նրանց կողմից օգտագործվող
տրակտորների քանակը՝ 9000-ի։ Եռամյա
պլանով կատարվելու են նաև ոռոգման մեծ
աշխատանքներ. Դանուբ-Տիսա նորակա-
ռույց ջրանցքը ոռոգելու է 130.000 հոլդ
նախկին չորային հողեր։ Եռամյա պլանը
նույնպիսի մեծ աշխատանքներ է նախատե-
սում տրանսպորտի, ժողովրդական լուսավո-
րության և այլ բնագավառներում։

Հունգարիայի աշխատավորությունը, բան-

վոր դասակարգի գլխավորությամբ, մեծ ո-
գևորությամբ ձեռնամուխ եղավ եռամյա
պլանի կատարմանը: 1947 թվին արդյունա-
բերության պլանը կատարվեց 104,6 տոկո-
սով, որը նախորդ տարվա համեմատությամբ
աճել էր 50,6 տոկոսով: 1948 թվի հոկտեմ-
բերին արդյունաբերության մի շարք կարևոր
ճյուղերի արտադրանքը, 1938 թվի հոկտեմ-
բերի համեմատությամբ, աճել էր՝ մետա-
լուրգիականը և մեքենաշինությանը՝ 62 տո-
կոսով, քիմիականը՝ 23 տոկոսով և տեքստի-
լինը՝ 10 տոկոսով: Աճել է նաև բանվորների
ռեալ աշխատավարձը և այն արդեն գերա-
զանցում է նախապատերազմյանից 10—25
տոկոսով: Արդյունաբերության մեջ լայնո-
րեն ծավալվել է աշխատանքի սոցիալիստա-
կան մրցությունը: Առաջավոր գործարան-
ների բանվորական կոլեկտիվների առա-
ջարկով և արդեն ձեռք բերված արդյունքնե-
րի հիման վրա, եռամյա պլանը կատարվում
է ժամկետից շուտ՝ 2 տարի 5 ամիս ժամկե-
տում, 1949 թիվը լինելու է եռամյա պլանի
վերջին տարին:

1948 թվին մեծ հաջողություններ ձեռք բեր-
վեցին նաև գյուղատնտեսության ասպարե-
զում: Անցյալ տարի երկիրը ստացավ առատ
բերք. ցորենի ընդհանուր բերքը կազմում էր



մոտ 14,3 միլ. ցենտներ, տարեկանինը՝ 6,5
միլիոն ցենտներ, կարտոֆիլինը՝ 20 միլ
ցենտներ (1947 թ. բերքի կրկնապատիկը) և
այլն: Հունգարիան, բավարարելով ներքին
շուկայի պահանջը, նորից սկսել է հացահա-
տիկ արտահանել:

Կարևոր բարեփոխումներ են կատարվել
լուսավորության ասպարեզում: Դպրոցի դռ-
ները բացվել են Հունգարիայի աշխատավո-
րության զավակների համար: 1948—49 ուս.
տարում երկրում գործում էին 4847 և պետք է
վերաբացվեին ևս 2650 ընդհանուր տիպի
դպրոցներ, որոնք ընդգրկելու են մինչև 1 մի-
լիոն աշակերտ:

Նոր դեմոկրատական կարգերի ու լավա-
գույն ապագայի համար երկրի աշխատավո-
րության ծավալած ստեղծագործական աշխա-
տանքների ու արդեն ձեռք բերած հաջողու-
թյունների կազմակերպիչն ու գլխավորողը
հանդիսանում է կոմունիստական պարտիան:
Կոմունիստական պարտիան ներկայումս
դարձել է երկրի ամենաբազմանդամ պար-
տիաներից մեկը (1919 թ. պարտիան իր
շարքերում ուներ 20.000 անդամ, իսկ 1947
թ. ավելի քան 8000.000 անդամ) 1948 թվի
հունիսին տեղի ունեցավ Հունգարիայի կո-
մունիստական ու սոցիալիստական պար-

տիայի միավորիչ համագումարը։ Միա-
վորված նոր պարտիան անվանվեց Հուն-
գարիայի Աշխատավորական Պարտիա։ Այդ
միավորումը կատարվեց Մարքսի-Էնգելսի-
Լենինի-Ստալինի ուսմունքի հիման վրա։
Հունգարիայի կոմունիստական պարտիայի
ազդեցությունը շատ մեծ է քաղաքի բանվո-
րության, գյուղի աշխատավորության, ինչպես
նաև ինտելիգենցիայի շրջաններում։ Նա իր
նպատակասլաց ու ճիշտ քաղաքականությամբ
կարողացել է նոր կարգերի ամրացման ու
երկրում ծավալված տնտեսական-կուլտուրա-
կան մեծ վերափոխիչ աշխատանքների շուրջը
համախմբել քաղաքի ու գյուղի աշխատավո-
րությանը, երկրի պրոգրեսիվ ուժերին։ Նրա
անմիջական նախաձեռնությամբ առաջադր-
վեցին ու կյանքում կիրառվեցին արդյունա-
բերության ազգայնացման, հողային ռեֆոր-
մի, ժողովրդական տնտեսության վերական-
գնման ու զարգացման եռամյա պլանի օ-
րենքները։

Հունգարիայի աշխատավորությանը քաջ
հայտնի է, որ թե իր պետական անկախ գո-
յության և թե նոր դեմոկրատական կարգե-
րում իր ձեռք բերած խոշորագույն հաջողու-
թյունների համար նա երախտապարտ է մեծ
Սովետական Միությանը։ Ազատելով հունգա-



րական ժողովրդին ստրկական կապանքնե-
րից, Սովետական Միությունը լայն օժանդա-
կություն է ցույց տալիս նրան իր տնտեսու-
թյան վերականգնման, երկրի ինդուստրաց-
ման և այլ աշխատանքներում։ Սովետական
Միությունը Հունգարիային օգնում է մեքենա-
ներով, հումքով, իսկ նրաշտային տարինե-
րին՝ նաև հացահատիկով, տեխնիկական
կոնսուլտացիայով։ Կազմակերպված են նավ-
թամշակման, գետային նավթագնացության
սովետա-հունգարական խառն ընկերություն-
ներ և այլն։ Սովետական Միությունը 1948
թվին մեծահոգաբար զիջեց հաշտության պայ-
մանագրով Հունգարիայից իրեն հասանելիք
ռեպարացիոն մնացած վճարումների 50 տո-
կոսը, որը մեծ օգնություն հանդիսացավ երկ-
րի տնտեսության համար։ 1948 թվի սկզբնե-
րին ՍՍՌՄ և Հունգարիայի ռեսպուբլիկայի
միջև կնքվեց բարեկամության, համագոր-
ծակցության և փոխադարձ օգնության պայ-
մանագիր, որը հսկայական նշանակություն
ունեցավ Հունգարիայի միջազգային հեղի-
նակության ու դերի բարձրացման և նոր դե-
մոկրատական կարգերը երկրում է՛լ ավելի
ամրացման գործում։ Հունգարիան եղբայրա
կան նույնպիսի տնտեսական ու քաղաքական
բազմակողմանի համագործակցությամբ

կապված է նաև նոր դեմոկրատիայի երկըր-
ների հետ։

Հունգարիայում արագորեն կառուցվում է նոր սոցիալիստական հասարակարգ։ Հունգարիայի կոմունիստական պարտիայի մարտական ղեկավար Ռակոշի Մատիասը, նշելով բանվոր դասակարգի ու աշխատավոր գյուղացիության դաշինքի ամրացման, երկրի ժողովրդական տնտեսության և նրա դեպի սոցիալիզմը արդեն կատարած շրջադարձի ասպարեզում ունեցած նվաճումների մասին, ասում է. «Այդ ուղղությամբ մենք հետագայում ևս կշարունակենք պայքարը մեր աշխատավորների երջանիկ կյանքի համար։ Այն ուղիով, որի վրա ոտք է դրել մեր ժողովրդական դեմոկրատիան, մենք կգնանք և կհասնենք կոմունիզմին»։

Հունգարիայի ստեղծագործ և խաղաղասեր աշխատավոր ժողովուրդը նոր դեմոկրատիայի կարգերում դարբնում է իր նոր կյանքի այսօրը, նա պայքարում է է՛լ ավելի լուսավոր ու պայծառ ապագայի համար։

Ս. ԲԵՐԲԵՐՅԱՆ

Աշխարհագրական գիտությունների թեկնածու

# ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

Անցել է երեք տարի այն օրվանից, երբ հրապարակվեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանը։ Այն, ինչ որ երեք տարի առաջ միայն թիվ էր ու պլան, այսօր ռեալ իրականություն է վեր ածվել, կյանք մտել։ Դրանք նորանոր գործարաններ ու ֆաբրիկաներ են, հանքահորեր ու երկաթուղիներ, բնակելի շենքեր և գիտական ու ուսումնական հաստատություններ, նորանոր մշակելի հողեր ու այգիներ։

ԱԳԻՏԱՏՈՐ.

Այս համարից սկսած «Բլոկնոտում» կհրապարակվեն նյութեր, թվեր ու փաստեր այն մասին, թե ինչպես է կատարվում Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման հնգամյա պլանը։ Օգտագործիր այդ նյութերը քո զրույցների ժամանակ, յուրաքանչյուր ունկնդրի սեփականությունը դարձրու այն։

Այս համարում հրապարակվում են նյութեր

այն մասին, թե ինչպես են կատարում իրենց հնգամյա պլանը Հայկական ՍՍՌ Տեղական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները։

***

Հայկական ՍՍՌ Տեղական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները արտադրության մակարդակի տեսակետից 1948 թվին կատարեցին իրենց հնգամյա պլանը։

Հնգամյակի անցած տարիների ընթացքում կառուցվեցին և շարք մտան հետևյալ արդյունաբերական ձեռնարկությունները։

## ՄԵՏԱՂԵ ԿՈՆՍՏՐՈՒԿՑԻԱՆԵՐԻ ԳՈՐԾԱՐԱՆ

Այս գործարանը ռեսպուբլիկայի նորակառույցների համար պատրաստում է այսպես կոչված՝ ոչ ստանդարտ սարքավորում— մետաղե կասկադներ՝ տները ծածկելու համար, փոքր կաթսաներ, ռեզերվուարներ և մետաղյա սարքավորում։

## ՆԵՐԿԵՐԻ ԵՎ ԼԱՔԵՐԻ ԳՈՐԾԱՐԱՆ

Ռեսպուբլիկայում լայնորեն ծավալված շինարարության համար պահանջվում են մեծ քանակությամբ ներկեր։ Մինչև այժմ այդ ներկերը բերվում էին Միության մյուս քաղաքներից։ Այժմ ներկերի և լաքերի Երևանի



գործարանը, որն արտադրում է հինգ տեսակ ներկեր՝ մումյա, օխրա, մարս, երևանյան կանաչ և ումրա, ամբողջովին բավարարում է մեր ռեսպուբլիկայի ինչպես նոր շինարարության, այնպես և աշխատավորության պահանջները։ Ներկերի արտադրության ամբողջ պրոցեսը մեքենայացված է, գործարանն աշխատում է տեղական հումքի բազայի վրա։

Գործարանի արտադրանքի ասորտիմենտը առաջիկայում ավելի կլայնանա, հատկապես նախատեսված է կազմակերպել սինթետիկ օլիֆի արտադրություն։

## ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՐՄԱՏՈՒՐԱՅԻ ԳՈՐԾԱՐԱՆ

Մեր աշխատավորները մեծ հաճույքով են գնում խանութներում այնքան առատորեն գտնվող էլեկտրական գեղեցիկ լուսամփոփները, ջահերը, սեղանի բազմապիսի լամպերը։ Դրանք ոչ միայն հնարավորություն են տալիս ըստ պահանջի և ցանկության օգտագործել էլեկտրական լուսավորությունը, այլև գեղեցիկ զարդ են հանդիսանում բնակարանի համար։

Այդ ամենը Երևանի էլեկտրալուսավորության գործարանի արտադրությունն է։ Գործարանը տարեկան տալու է մեկ միլիոն 200 հազար ռուբլու արտադրանք։

## ԿՈՇԻԿԻ ՖԱԲՐԻԿԱ

Երևանից Քանաքեռ տանող ճանապարհի եզրին արդեն 2-րդ տարին է, ինչ կառուցվել ու շահագործման է հանձնվել կոշիկի լրիվ մեքենայացված ու նորագույն սարքավորմամբ կահավորված ֆաբրիկան։ Նա տարեկան արտադրելու է մինչև 100 հազար զույգ բազմատեսակ կոշիկ։

## ՀԱԽՃԱՊԱԿՈՒ ԳՈՐԾԱՐԱՆ

Երևանի Հախճապակու գործարանը ռեսպուբլիկայի հնգամյա պլանով նախատեսված նորակառույցներից է։ Այն շահագործման հանձնվեց 1948 թվի սկզբին։ Այսպիսով մեր ռեսպուբլիկայում հիմք դրվեց հախճապակու արտադրությանը։

Գործարանն ունի նորագույն սարքավորում, այնտեղ արտադրության բոլոր պրոցեսները մեքենայացված են։ Այն աշխատում է տեղական հումքի բազայի վրա։ Գործարանն արտադրում է տնային գործածության զանազան ամանեղեն-ափսեներ, թեյի բաժակներ, ինչպես նաև սանիտարական սարքավորում՝ լվացարաններ, ունիտազեր և այլն։ Գործարանի արտադրության հիմնական տեսակ են հանդիսանում նաև երեսպատման սալիկները, որոնց մեծ պա-



հանջ են զգում ռեսպուբլիկայի նորակառույցները։

Գործարանը տարեկան արտադրելու է մինչև կես միլիոն հատ ամանեղեն և մինչև 600 հազար հատ երեսպատման սալիկներ։

## ԿԱՀՈՒՅՔԻ ՖԱԲՐԻԿԱ

Գնալով ավելի ու ավելի են աճում մեր աշխատավորության՝ բարձրորակ ու գեղեցիկ կահույք ունենալու պահանջները։ Այդ պահանջները բավարարելու գործում իր խոշոր տեղն ունի Երևանի կահույքի նորակառույց ֆաբրիկան, որը մասսայական կերպով արտադրում է ճաշի սեղաններ, բուֆետներ, շիֆոներկաներ, կիսափափուկ աթոռներ և այլ կահույք։ Ֆաբրիկան լրիվ չափով սարքավորված է նորագույն մեքենաներով։ Նա տարեկան տալու է մեկ միլիոն 200 հազար ռուբլու (անփոփոխ գներով) արտադրանք։

***

Այս նոր արդյունաբերական ձեռնարկությունների կառուցման և գործարկման հետ միասին ըստ հնգամյա պլանի խոշոր չափով ընդլայնվել է նաև մինիստրության արդեն գործող գործարանների ու ֆաբրիկաների արտադրությունը։

Այսպես օրինակ. Երևանի Գյուղգործիքների գործարանը 1946 թվից սկսեց արտադրել

գյուղական փոքրիկ էլեկտրակայաններ՝ միկրոգէսեր, այս տարվանից արտադրում է գեներատորներ։ Բացի այդ, գործարանը մեծ քանակությամբ արտադրում է ալյումինե ամանեղեն։

Երևանի Քիմիական գործարանը սկսել է արտադրել քիմիական նոր նյութեր, լվացքի հեղուկ, մեծ չափով ընդարձակվել է ապակյա ամանեղենի և իրերի արտադրությունը, փողոցների լուսավորության համար սկսել է արտադրել ապակյա լուսամփոփներ։ Այս տարի գործարանն արտադրելու է 140 տոննա ցինկապատված տնային գործածության ամանեղեն։

Լենինականի մեխանիկական գործարանը սկսել է արտադրել կերոսինկաներ և ըստ պլանի այս տարի տալու է 10 հազար հատ կերոսինկա։

Իրենց արտադրանքը ավելացրել են Երևանի դպրոցական պիտույքների գործարանը, որը այս տարի պետք է տա 10 միլիոն տետր, 3.000 հատ աշակերտական սեղան-նստարաններ, այսինքն մեկ և կես անգամ ավելի, քան անցյալ տարի և 2.500 հատ գրատախտակ՝ 1948 թվին արտադրած 1000 գրատախտակի փոխարեն։

## ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

**Գ. ԳԼԵՁԵՐՄԱՆ— «Ինչպես պատրաստվել ու անցկացնել զրույցը». Հայպետհրատ, 1948 թ.**

«Ագիտատորի գրադարան»-ի սերիայով լույս տեսած այս բրոշյուրում խոսվում է այն մասին, թե ինչպես պետք է ագիտատորը նախապատրաստի ու անցկացնի զրույցը։

Բոլշևիկյան ագիտացիայի բազմազան ձևերի ու մեթոդների մեջ իր կարևոր տեղն ունեն ագիտատորների կողմից անցկացվող զրույցները։ Թե խմբական և թե անհատական զրույցները հնարավորություն են տալիս ագիտատորին սերտ շփման մեջ մտնելու իր ունկնդիրների հետ, ավելի լավ հաշվի առնել, թե իր ունկնդիրների համար ինչ բան պարզ չէ, ինչ պահանջներ ունեն նրանք։

Զրույցի համար ագիտատորի պատրաստվելը սովորաբար սկսվում է թեմայի համար անհրաժեշտ նյութի բազմակողմանի ուսումնասիրությունից, զրույցի պլանը կազմելուց, հետաքրքրական օրինակների և տեղական նյութի ընտրությունից, որն անհրաժեշտ է, որպեսզի զրույցն աշխույժ անցնի և այն իր նպատակին հասնի։ Զրույցի պլանը կազմելիս

օգտակար է նախատեսնել ոչ միայն այն հարցերը, որոնց մասին պետք է խոսել, այլև այն, թե ինչպես, մեթոդական ինչ ձևերով պետք է այն շարադրել: Տեղական՝ գործարանի, կոլխոզի կյանքից վերցված փաստական նյութի ընտրությունը զրույցին պատրաստվելու չափազանց կարևոր մասն է:

Բացի հերթական թեմայի նախապատրաստումից, ագիտատորը պետք է հոգա զրույցի նաև կազմակերպական նախապատրաստման մասին: Ագիտատորը պետք է աշխատի հասնել այնպիսի դրության, որ զրույցն անցկացվի հարմար շենքում, այնպիսի վայրում, որ ունկնդիրներին տրամադրի ընկալելու ագիտատորի ասածը: Նայած աշխատանքի պայմաններին ու անցկացվող զրույցի թեմային ու տևողությանը, զրույցները պետք է կազմակերպել ճաշվա ընդմիջումներին, աշխատանքից հետո. կարճ զրույցները կարելի է անցկացնել նաև մինչև աշխատանքն սկսելը: Զրույցի մասնակիցների քանակը չափազանց մեծ չպետք է լինի, լավ է, երբ նրանց թիվը 15—20-ից ավելի չէ: Զրույցի հաջողության գլխավոր պայմաններից մեկն էլ ագիտատորի կողմից իր ունկնդիրներին ճանաչելն է, նրանց հետ շփվելը ոչ միայն



զրույցի ժամանակ, այլև գործնական աշխատանքի մեջ:

Գոյություն ունի զրույցի կառուցման երկու եղանակ: Մի դեպքում ագիտատորը զրույցն սկսում է ընդհանուր դրույթների բացատրությունից, ապա անցնում է մասնավոր, կոնկրետ հարցերի: Այլ դեպքում ագիտատորը զրույցն սկսելով մասնավոր, կոնկրետ հարցերից անցնում է ընդհանրացումներին: Փորձը ցույց է տալիս, որ վերջին եղանակը ավելի հասկանալի է ունկնդիրների համար:

Զրույցն ամենից լավ է անցնում այնտեղ, որտեղ հարցերի կենդանի, անբռնազբոսիկ քննարկում է ծավալում: Ագիտատորը հարցերի քննարկումը պետք է աշխատի տանել պլանով, տալով նրան որոշ նպատակասլացություն, որպեսզի ունկնդիրներին մղի պրակտիկ եզրակացությունների:

Բրոշյուրում բերված են բազմաթիվ օրինակներ, թե ինչպես բոլշևիզմի հիմնադիրներ Լենինը և Ստալինը ցարիզմի դաժան տարիներին բանվորների շրջանում կազմակերպում և անց էին կացնում իրենց զրույցները: Ագիտատորները քաղաքական ագիտացիայի վարպետությունը պետք է սովորեն Լենինից և Ստալինից:

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

«Ագիտատորի գրադարան» սերիայով լույս են տեսել.

Գ. Ժուրավլյով.— «Ագիտատորը սոցիալիստական մրցության կազմակերպիչն է»։ Տիրաժ 10 հազար օրինակ, 72 էջ, գինը՝ 1 ռուբլի, 1948 թիվ։

Գ. ՇԻՏԱՐԵՎ.— «Բնակչության մեջ բստ բնակության վայրի կատարված քաղաքական ագիտացիայի փորձը»։ Տիրաժ 10 հազար օրինակ, 63 էջ, գինը՝ 1 ռուբլի, 1949 թիվ։

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

ՎՖ 01285 Պատվեր № 320 Տիրաժ 9.000
Պոլիգրաֆ. և հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 7 1949 г.